ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 9 ՄԱՅԻՍ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



—O—

---

# ԱԿՈՒՄԲԸ ԵՎ ԳՐԱԴԱՐԱՆԸ ԱԳԻՏԱՑԻՈՆ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՕՋԱԽՆԵՐՆ ԵՆ

*Ընկեր Ստալինը խնդիր է դրել՝ մեր երկրի բոլոր բանվորներին և գյուղացիներին դարձնել կուլտուրական և կրթված մարդիկ։ Ստալինյան այդ առաջադրանքը կատարելու գործում կոչված են մեծ դեր խաղալու կուլտուր-լուսավորական հիմնարկները՝ ակումբները, գրադարանները, կուլտուրայի տները, թանգարանները։*

*Սովետական իշխանության գոյության տարիներին, բոլշևիկյան պարտիայի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ, ինչպես մեր ամբողջ երկրում, այնպես էլ Սովետական Հայաստանում, իսկական կուլտուրական ռևոլյուցիա տեղի ունեցավ։ Հայաստանը ծածկված է դպրոցների և կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ ցանցով։ Ռեսպուբլիկայում չկա մի գյուղ, որը չունենա իր ակումբը և գրադարանը։ Կուլտուր լուսավորական հիմնարկների ցանցը ռեսպուբլիկա-*

յի քաղաքներում ու գյուղերում ընդարձակվեց հատկապես վերջին տարիների ընթացքում։ Միայն Երևանում 1950 թվականի ընթացքում կառուցվեցին և շահագործման հանձնվեցին 5 նոր կուլտուրայի տուն և ակումբ, 6 կինո-թատրոն, 9-ը մասսայական գրադարան։ Այժմ մեր ռեսպուբլիկայում հաշվվում են 48 կուլտուրայի տուն, մոտ 1100 ակումբ, 1500 գրադարան, 10 գավառագիտական և տուն-թանգարան, 9 կուլտուրայի և հանգստի պարկ։

Կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցի ընդարձակումը մեր բնակչության կուլտուրական մակարդակի աճման չափանիշ է։ Ակումբը և գրադարանը բնակչության շրջանում տարվող ագիտացիոն մասսայական, կուլտուր-քաղաքական աշխատանքի օջախներ են։ Կարելի է բերել բազմաթիվ օրինակներ այն մասին, թե ինչպես շատ ակումբներ, կուլտուրայի տներ և գրադարաններ, ագիտկոլեկտիվների հետ միասին հաջողությամբ կազմակերպելով իրենց աշխատանքը, պարտիական կազմակերպությունների ձեռքում հանդիսանում են հզոր միջոց աշխատավորների կոմունիստական դաստիարակության կազմակերպման համար։



Ահա օրինակ, Միկոյանի շրջանի Գնեշիկ գյուղի ակումբը։ Այստեղ կոլխոզնիկների համար ամեն օր կազմակերպվում են զրույցներ քաղաքական, միջազգային հարցերի շուրջը, սիստեմատիկաբար դասախոսություններ են կարդացվում գիտության տարբեր բնագավառների և հատկապես գիտալուսավորական հարցերի մասին, ցուցադրվում են գեղարվեստական և գիտական կինոֆիլմեր։ Ակումբին կից կազմակերպված են հանրակրթական, ֆիզկուլտուրայի, ագրոզոոտեխնիկական, ինչպես նաև գեղարվեստական ինքնագործունեության խմբակներ։ Ակումբում հաճախ ելույթ են ունենում Երևանից և շրջանային կենտրոնից եկած համերգային և թատերական խմբերը։ Ակումբում լավ է կազմակերպված ցուցադրական ագիտացիան։ Ագիտկոլեկտիվը պլակատների, դիագրամների միջոցով լայնորեն մասսայականացնում է Սովետական Միության, այդ թվում նաև մեր ռեսպուբլիկայի ձեռք բերած նվաճումները։

Վերջին մի քանի շաբաթների ընթացքում ակումբում ագիտատորները իրենց զրույցների ընթացքում լայնորեն մասսայականացրել են հետպատերազմյան առաջին հնգամ-

յա պլանի կատարման արդյունքները, դրա համար օգտագործելով ակումբում եղած անհրաժեշտ գրականությունը, թերթերը, ցուցադրական նյութերը և այլն։

Ռեսպուբլիկայի լավագույն գրադարանների թվին է պատկանում Գորիսի շրջանային մանկական գրադարանը, որն ունի մոտ 8000 կտոր գիրք և մոտ 700 մշտական ընթերցող։ Գրադարանը հաջողությամբ է կազմակերպել գրքի պրոպագանդան։ Սիստեմատիկաբար այստեղ կազմակերպվում են ընթերցողների կոնֆերանսներ, գրական երեկոներ, բարձրաձայն ընթերցանություններ, տրվում են նոր լույս տեսած գրքերի հանձնարարականներ և այլն։ Շրջանային ակումբում սիստեմատիկաբար կազմակերպվում են զրույցներ, զեկուցումներ, հարց ու պատասխանի երեկոներ։ Ակումբին կից գործում են պատանի բնասերների, աշխարհագրագետների, ինչպես նաև ռուսաց լեզուն ուսումնասիրող և գրական խմբակներ։

Կուլտուր-լուսավորական աշխատանքները բովանդակալից և հետաքրքիր դարձնելու գործում խոշոր նշանակություն ունի առաջավոր ակումբների, կուլտուրայի տների



փորձի մասսայականացումն ու արմատավորումը։ Դժբախտաբար քիչ ուշադրություն է դարձվում այդ հարցի վրա։ Անհրաժեշտ է լայնորեն տարածել և արմատավորել օրինակելիորեն աշխատող կուլտուր-լուսավորական հաստատությունների փորձը։

Մեծ նշանակություն ունի աշխատավորության կուլտուրական հանգստի կազմակերպումը։ Իսկ այդ ուղղությամբ բավականաչափ անելիքներ ունեն կուլտուր-լուսավորական հաստատությունները, կուլտուրայի և հանգստի պարկերը, որոնք նույնպես պետք է դառնան ագիտացիոն-մասսայական աշխատանքի օջախներ։

Այժմ հարկավոր է հատուկ ուշադրություն նվիրել հետպատերազմյան առաջին հնգամյա պլանի կատարման արդյունքների մասսայականացմանը, որպեսզի սովետական ժողովրդի տարած պատմական խոշոր հաղթանակները հասցվեն մեր յուրաքանչյուր քաղաքացու գիտակցությանը։ Դրա համար անհրաժեշտ է օգտագործել ակումբների, կուլտուրայի տների, հանգստի և կուլտուրայի պարկերի ունեցած բոլոր հնարավորությունները— կազմակերպել զեկուցումներ, զրույցներ, հատուկ կինոցուցադրումներ, ցուցահանդեսներ։ Ա-

առանձնապես մեծ տեղ պետք է հատկացվի ցուցադրական ագիտացիային, որի միջոցով հնարավոր է ցայտուն կերպով յուրաքանչյուր աշխատավորի ցույց տալ այն վիթխարի նվաճումները, որոնք սովետական ժողովուրդը, բոլշևիկյան պարտիայի, մեծ Ստալինի ղեկավարությամբ ձեռք է բերել հետպատերազմյան առաջին հնգամյա պլանի կատարումով։

Հայաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարը Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Կուլտուր-լուսավորական հիմնարկների գործերի կոմիտեին և ռեսպուբլիկայի պարտչական կազմակերպություններին պարտավորեցրեց՝ ամեն միջոց գործադրել արմատապես բարելավելու կուլտուրայի տների, ակումբների, գրադարանների աշխատանքը, բարձրացնել նրանց աշխատանքի գաղափարական մակարդակը և կուլտուր-լուսավորական հիմնարկների գործունեությունն ուղղել բնակչության մեջ գիտա-լուսավորական պրոպագանդայի ուժեղացմանը, կոլտնտեսականներին գյուղատնտեսական ու զոոտեխնիկական գիտելիքներով զինելուն, գեղարվեստական ինքնագործունեությունը բանվորների և կոլտնտեսականների կենցաղում արմատավորելուն։



Այս կարևորագույն խնդրի կատարման գործում մեծ անելիքներ ունեն նաև ագիտկոլեկտիվները։ Պարտիայի շրջանային և քաղաքային կոմիտեների, սկզբնական պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ նրանք կոնկրետ օգնություն պետք է ցույց տան կուլտուր-լուսավորական հիմնարկներին, այն բանի համար, որ ակումբները և գրադարանները դառնան քաղաքական-մասսայական, ագիտացիոն-կուլտուրական աշխատանքի իսկական կենտրոններ։ Ագիտկոլեկտիվը սերտ համագործակցության մեջ պետք է լինի կուլտուր-լուսավորական հիմնարկների հետ։ Ագիտատորը պետք է մոտ կանգնած լինի ակումբին, գրադարանին։ Ագիտկոլեկտիվների ղեկավարները ակումբների վարիչների հետ միասին պետք է կազմեն և իրականացնեն ակումբում կարդացվելիք դասախոսությունների թեմատիկ պլանը, ապահովեն ամենօրյա զրույցների և բարձրաձայն ընթերցանությունների գործը, բարելավեն ցուցադրական ագիտացիայի դրվածքը։

Ակումբին և գրադարանին օգնելը, նրանց աշխատանքներին ակտիվորեն մասնակցելը՝ յուրաքանչյուր ագիտկոլեկտիվի, յուրաքանչյուր ագիտատորի պարտքն ու պարտականությունն է։

—O—

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Սովետական ժողովուրդը իր հզոր Հայրենիքի համար հսկայական բերկրանքի ու հպարտության զգացմունքով ընդունեց ՍՍՌՄ Պետական պլանային Կոմիտեի և ՍՍՌՄ Կենտրոնական Վիճակագրական Վարչության Հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ 1946—1950 թվականների չորրորդ (հետպատերազմյան առաջին) հնգամյա պլանի կատարման արդյունքների մասին։

Հետպատերազմյան հնգամյա պլանը ընդունել էր ՍՍՌՄ Գերագույն Սովետը 1946 թվականի մարտին։ Այդ այն ժամանակ էր, երբ մեր երկիրը Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո կրկին թևակոխեց խաղաղ շինարարության ուղին։

Ընկեր Ստալինը 1946 թվականի փետրվարի 9-ին ընտրողների ժողովում արտասա-



նած ճառում որոշելով կոմունիստական պարտիայի մոտակա ժամանակների և ավելի երկարատև ժամանակաշրջանի աշխատանքի պլանները, ասաց.

«Նոր հնգամյա պլանի հիմնական խնդիրներն են՝ վերականգնել երկրի տուժած շրջանները, վերականգնել արդյունաբերության և գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը և այնուհետև քիչ թե շատ զգալի չափով գերազանցել այդ մակարդակը»։

Պատերազմը, ինչպես հայտնի է, նյութական անհաշիվ վնասներ հասցրեց մեր երկրին։ Իմպերիալիստական գիշատիչները հույս ունեին, թե Սովետական Միությունը չի կարողանա սեփական ուժերով դուրս գալ հետպատերազմյան դժվարություններից։ Սակայն տապալվեցին նրանց ստոր հաշիվները։ Մեր Հայրենիքը իր մեջ ուժեր և հնարավորություններ գտավ ոչ միայն պատերազմի հասցրած վերքերը բուժելու համար, այլև արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության, աշխատավորության բարեկեցության ու կուլտուրայի հետագա հզոր վերելքը կազմակերպելու համար։

Սովետական ժողովուրդը հնգամյա պլանը դիմավորեց որպես իր կենսական շահերին համապատասխանող մարտական ծրագիր և խանդավառությամբ ձեռնամուխ եղավ նրա կենսագործմանը։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական մարդիկ չխնայեցին իրենց ուժերն ու աշխատանքը՝ հետպատերազմյան հնգամյակի կատարման և գերակատարման համար մղվող պայքարում։ Համաժողովրդական սոցիալիստական մրցությունն ընդունեց չտեսնված լայն թափ։ Մեր երկրի միլիոնավոր աշխատավորները հանդես բերեցին և հանդես են բերում ստեղծագործական արժեքավոր նախաձեռնություն, անդուլ կերպով հայտնաբերում և գործադրության մեջ են դնում արտադրության աճման ներքին ռեսուրսները։

Սովետական ժողովրդի հերոսական աշխատանքը և Լենինի—Ստալինի պարտիայի իմաստուն քաղաքականությունը տվին իրենց հիանալի արդյունքները։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թվականների հետպատերազմյան հնգամյա պլանը հաջողությամբ կատարվել է, իսկ պլանի կար-



ևորագույն առաջադրանքները զգալիորեն գերակատարվել են:

Հետպատերազմյան հնգամյակի հաջող կատարումը՝ սովետական ժողովրդի մեծ, համաշխարհային-պատմական հաղթանակն է, մի խոշոր առաջընթաց քայլ կոմունիզմի ճանապարհին:

Սովետական Միության տնտեսական հզորության հիմքը սոցիալիստական ինդուստրիան է և ամենից առաջ՝ ամբողջ ծանր արդյունաբերությունը։ Դա այն ուժն է, որ առաջ է մղում ամբողջ ժողովրդական տնտեսությունը։ Ինդուստրացման ստալինյան քաղաքականության շնորհիվ մեր երկիրը չտեսնված կարճ ժամանակամիջոցում ագրարային ու հետամնաց երկրից դարձավ հզոր արդյունաբերական պետություն։ Հայրենական Մեծ պատերազմի նախօրյակին մեր երկրի խոշոր արդյունաբերությունը համարյա 12 անգամ շատ արտադրանք էր տալիս, քան 1913 թվականին։

Հետպատերազմյան հնգամյակում սոցիալիստական արդյունաբերությունը հասավ իր զարգացման նոր, շատ ավելի բարձր աստիճանին։ Հնգամյա պլանով սահմանվել

էր, որ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության արտադրանքի ծավալը 1950 թվականին, հնգամյակի վերջին տարում, պետք է ավելանա 48 տոկոսով՝ նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ։ Այդ առաջադրանքը խոշոր չափով գերազանցվեց։ Փաստորեն 1950 թվականին Սովետական Միությունում արդյունաբերական արտադրանք է թողարկվել 73 տոկոսով ավելի, քան 1940 թվականին։

Այլ կերպ ասած՝ անցած հնգամյակի վերջին տարում սովետական ձեռնարկությունները մոտ երեք քառորդով շատ արտադրանք են տվել, քան տալիս էին պատերազմից առաջ։ Իր գոյության ամբողջ ընթացքում մեր Հայրենիքի արդյունաբերությունը դեռ երբեք այնքան հզոր ու զարգացած չի եղել, դեռ երբեք այնքան շատ արտադրանք չի թողարկել, ինչպես հիմա։

Սովետական Միության արդյունաբերությունը հետպատերազմյան հնգամյա պլանը կատարեց ժամկետից շուտ՝ չորս տարի երեք ամսում: Հնգամյա պլանով 1950 թվականի համար սահմանված առաջադրանքը արդյունաբերության արտադրանքի ծավալի գծով գերակատարվեց 17 տոկոսով։ Այժմ ամ-



բողջ աշխարհը տեսնում է, որ արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար սովետական մարդկանց մղած անձնվեր, համառ պայքարը պսակվեց փայլուն հաղթանակով:

Հիանալի են հատկապես արդյունաբերության հաջողությունները։ Մետաղի, մեքենաների արտադրությունը, ածխի և նավթի հանույթը, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ ահա ինչն է, ամենից առաջ, որոշում երկրի էկոնոմիկայի զարգացման մակարդակը։ Հետպատերազմյան հնգամյակի տարիներին հաջողությամբ լուծվեց ծանր արդյունաբերության վերականգնման ու զարգացման առաջնահերթ խնդիրը։

Պողպատի ձուլման և գլանվածքի արտադրության, ածխի և նավթի հանույթի, էլեկտրաէներգիայի արտադրության, մեքենաների, մեխանիզմների և գործիքների թողարկման գծով հնգամյակի առաջադրանքները գերակատարվել են։ 1950 թվականին սև մետաղների արտադրությունն ամբողջությամբ վերցրած՝ գերազանցեց նախապատերազմյան մակարդակը 45 տոկոսով։ Նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ ածխի հանույթն ավելացավ 57 տոկոսով, նավթի հա-

*նույթը՝ 22 տոկոսով, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 87 տոկոսով։ Մեքենաշինության արտադրանքը նախապատերազմյան արտադրության մակարդակը գերազանցեց 2,3 անգամ։ Այս թվերը վառ կերպով վկայում են մեր սոցիալիստական Հայրենիքի՝ ամբողջ աշխարհում խաղաղության պատվարի հզորության ամրապնդման մասին։*

*Հնգամյակի առաջադրանքները գերակատարված են նաև քիմիական արդյունաբերության կողմից։ Օրինակ՝ ազոտային պարարտանյութերի արտադրության նախապատերազմյան մակարդակը գերազանցվել է 2,3 անգամ։ Զգալիորեն ավելի, քան պատերազմից առաջ, արտադրանք են տվել գունավոր մետալուրգիան, շինանյութերի արդյունաբերությունը, անտառային արդյունաբերությունը։*

*Հետպատերազմյան հնգամյակի ընթացքում արագ կերպով վերականգնվել և զարգացվել են թեթև արդյունաբերության և սննդարդյունաբերության բոլոր ճյուղերը։ Հնգամյակում բամբակե գործվածքների թողարկումն ավելացել է 2,4 անգամ, բրդյա գործվածքներինը՝ 2,9 անգամ, կաշվե կոշկեղենինը՝ 3,2 անգամ։ Նախապատերազ-*



*մյան մակարդակի համեմատությամբ 1950 թվականին կենդանական յուղի արտադրությունը ավելացել է 57 տոկոսով, ձկան որսը՝ 27 տոկոսով, շաքարի արտադրությունը՝ 17 տոկոսով և այլն։*

*Հայրենական առաջավոր տեխնիկայով հագեցված ձեռնարկությունների վերականգնման, կառուցման և վերակառուցման հետևանքով ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության հիմնական ֆոնդերը 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել են 58 տոկոսով։ Մեր երկրի գործարաններում ու ֆաբրիկաներում դազգահների թիվը բարձրացել է ավելի քան երկու անգամ։ Այդ արագ աճը տեղի է ունեցել ի հաշիվ նոր, ավելի արտադրողական, ավելի կատարելագործված դազգահների։*

*Մեր երկիրն արագ տեմպերով ընթանում է տեխնիկական պրոգրեսի ուղիով։ Սովետական ձեռնարկություններն անընդհատ հագեցվում են ժամանակակից տեխնիկայով։ Ամենուրեք կատարելագործվում են տեխնոլոգիական պրոցեսները։ Նոր տեխնիկայի հաջող արմատավորումը հնարավորություն տվեց ավելի մեծ մասշտաբներով անցկացնելու ժողովրդական տնտեսության հետագա տեխնիկական վերազինումը և*

բարձրացնելու աշխատատար ու ծանր աշխատանքների մեքենայացման մակարդակը։

Հնգամյակի տարիներին, օրինակ, յուրացվել է ընդհանուր օգտագործման մոտ 250 նոր տիպի մետաղահատ դազգահների, ավելի քան հազար տիպի հատուկ և մասնագիտական դազգահների, 23 տիպի ավտոմատների արտադրությունը։ Ստեղծվել են ավտոմատիկ դազգահային 26 գծեր և ավտոմատ գործարան՝ ավտոմոբիլային դետալներ պատրաստելու համար։ Վառելանյութերի արդյունաբերության համար ստեղծվել են ածխային կոմբայներ, հանքաբեռնման և ածխաբեռնման մեքենաներ, նավթահորատման սարքեր՝ խոր հորատման համար։ Խոշորագույն հիդրոէլեկտրակայանների և խոշոր ջրանցքների կառուցման համար արտադրվել են բարձր արտադրողականություն ունեցող միաշերեփ ու բազմաշերեփ էքսկավատորներ և սկրեպերներ։ Յուրացվել և մասսայական արտադրության համար ընդունվել է ավելի քան 150 նոր տիպի բարձր արտադրողականություն ունեցող գյուղատնտեսական մեքենա։

Տեխնիկական պրոգրեսը, բանվորների, ինժեներների և տեխնիկների որակավորման բարձրացումն ու ստեղծագործական նախա-



ձեռնությունը ապահովեցին աշխատանքի արտադրողականության զգալի աճումը։ Նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ բանվորների աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ աճել է 37 տոկոսով, իսկ շինարարության մեջ՝ 23 տոկոսով։

Հնգամյա պլանը հաջող են կատարել սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողները։ Հետպատերազմյան հնգամյակի տարիներին էլ ավելի աճեց և ամրապնդվեց կոլխոզների հանրային տնտեսությունը, աճեց գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազան, բարձրացավ ՄՏԿ-ների դերը կոլխոզային արտադրության մեջ, պատրաստվեցին որակյալ նոր կադրեր։ Հետպատերազմյան հնգամյա պլանի հաջող կատարման հետևանքով մեր երկրի գյուղատնտեսությունը հասավ նոր հզոր վերելքի:

Հինգ տարում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունն ընդարձակվեց ավելի քան 20 տոկոսով։ Հացահատիկի համախառն բերքը 1950 թվականին 1940 թվականի մակարդակը գերազանցեց 345 միլիոն փթով։ Ընդորում ցորենի արտադրությունը նախապատերազմյան մակարդակի

համեմատությամբ ավելացավ 376 միլիոն փթով։ Հացահատիկային կուլտուրաների բերքատվության գծով հնգամյա պլանի առաջադրանքը գերակատարվել է։

Մեծ աճ է ձեռք բերվել տեխնիկական կուլտուրաների արտադրության գծով։ Ընդամյակում տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունն ավելացել է 59 տոկոսով։ Բամբակի համախառն բերքն ավելացավ համարյա երեք անգամ, վուշաթելը՝ ավելի քան երկու անգամ, շաքարի ճակնդեղինը՝ 2,7 անգամ։

Կոլխոզները գերակատարել են հանրային անասունների գլխաքանակի աճման հնգամյա պլանի առաջադրանքները։ Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել հողագործության կուլտուրայի բարձրացման, բուսական վերափոխման ստալինյան պլանի կենսագործման ասպարեզում։

Այս բոլոր հաջողությունները արդյունք են այն հսկայական հոգատարության, որ ցուցաբերում են պարտիան ու կառավարությունը կոլխոզների, ՄՏԿ-ների և սովխոզների զարգացման, գյուղատնտեսական արտադրության մեքենայացման գործում։ Հետպատերազմյան հնգամյակի տարիներին



արդյունաբերությունը գյուղատնտեսությանը տվել է 536 հազար տրակտոր՝ 15 ուժանիի փոխարկած, 93 հազար հացահատիկային կոմբայն և մի քանի միլիոն այլ մեքենաներ։

Ժողովրդական տնտեսության անշեղ հզոր վերելքին մեր երկրում ուղեկցում է ազգային եկամտի անընդհատ ավելացումը և աշխատավորների նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացումը։

Զգալիորեն գերակատարվել է ազգային եկամտի ավելացման՝ հետպատերազմյան հնգամյա պլանի առաջադրանքը։ Հնգամյակով նախատեսված էր ազգային եկամտի նախապատերազմյան մակարդակը գերազանցել 38 տոկոսով։ Իսկ իրականում նախապատերազմյան մակարդակը 1950 թվականին գերազանցվեց, համադրելի գներով, 64 տոկոսով։

Այն ժամանակ, երբ կապիտալիստական երկրներում ազգային եկամտի կեսից ավելին յուրացնում է կապիտալիստների դասակարգը, Սովետական Միությունում ամբողջ ազգային եկամուտը պատկանում է աշխատավորներին։ 1950 թվականին ՍՍՌՄ աշխատավորներն իրենց անձնական նյութա-

*կան և կուլտուրական պահանջները բավարարելու համար ստացան ազգային եկամտի 74 տոկոսը։ Ազգային եկամտի մնացած 26 տոկոսը մնաց պետության, կոլխոզների և կոոպերատիվ կազմակերպությունների տնօրինության տակ՝ սոցիալիստական արտադրության ընդլայնման և համապետական ու հասարակական այլ կարիքների համար։*

*Ազգային եկամտի աճման և պետական բյուջեի հաջող կատարման հետևանքով՝ ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների հնգամյա պլանը կատարվել է 22 տոկոս գերազանցումով։ Հնգամյակում վերականգնվել, կառուցվել և գործարկվել է ավելի քան վեց հազար ձեռնարկություն, չհաշված փոքր ձեռնարկությունները։*

*Սովետական կառավարությունը կիրառում է մասսայական սպառման ապրանքների գները սիստեմատիկորեն իջեցնելու քաղաքականություն։ 1947—1950 թվականների ընթացքում մեր երկրում երեք անգամ կատարվել է գների իջեցում։ 1951 թվականի մարտի 1-ից կատարվեց գների նոր, թվով չորրորդ, իջեցում։ Այդ ապահովեց բանվորների, ծառայողների, ինտելիգենցիայի ռեալ աշխատավարձի լուրջ բարձրացումը և գյու-*



*ղացիների ծախսերի կրճատումը՝ ճժանացված արդյունաբերական ապրանքներ գնելու համար։*

*Սովետական մարդկանց նյութական դրության զգալի բարելավման մասին պարզորեն վկայում է այն փաստը, որ բանվորների ու ծառայողների եկամուտների և գյուղացիների եկամուտների ընդհանուր գումարը 1940 թվականի համեմատությամբ 1950 թվականին ավելացավ, համադրելի գներով, 62 տոկոսով։*

*Հետպատերազմյան հնգամյակում զգալի չափով ավելացան աշխատավորների կուլտկենցաղային սպասարկման համար պետության կողմից կատարվող ծախսերը։ 1950 թվականին բնակչությունը պետության հաշվին ստացել է զանազան վճարումներ և արտոնություններ՝ ավելի քան 120 միլիարդ ռուբլի, կամ երեք անգամ ավելի, քան 1940 թվականին։*

*Ժողովրդի նյութական դրության վերելքի հետ միասին՝ հետպատերազմյան հնգամյակում էլ ավելի ծաղկեց կուլտուրան, գիտությունը, արվեստը։ Տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցների, տեխնիկումների և մյուս միջնակարգ ուսումնական*

հաստատությունների սովորողների թիվը հնգամյակում ավելացավ 8 միլիոն մարդով, իսկ բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողների թիվը՝ 435 հազար մարդով։ Հնգամյակի տարիներին գիտության, տեխնիկայի, գրականության ու արվեստի բնագավառում աչքի ընկնող աշխատանքների, գյուտերի ու նվաճումների համար Ստալինյան մրցանակների են արժանացել ավելի քան վեց և կես հազար մարդ։

Հետպատերազմյան տարիներին լայնորեն ծավալվեց բնակարանային շինարարությունը։ Պետական ձեռնարկությունները, հիմնարկները և տեղական Սովետները, ինչպես նաև քաղաքների և բանվորական ավանների բնակչությունը, պետական վարկի օգնությամբ, կառուցել և վերականգնել են բնակելի տներ՝ ավելի քան 100 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ։ Բացի դրանից, գյուղական վայրերում վերականգնվել և կառուցվել է 2 միլիոն 700 հազար բնակելի տուն։

Հետպատերազմյան հնգամյակի հանրագումարներում վառ կերպով արտահայտված է բոլշևիկյան պարտիայի, սովետական կա-



ռավարության, անձամբ ընկեր Ստալինի հայրական հոգատարությունը՝ ժողովրդի ընդհանուր բարեկեցության մասին։

Հետպատերազմյան հնգամյակում մեր Հայրենիքի ձեռք բերած նվաճումները, հիրավի, հսկայական են։ Բայց սովետական մարդկանց հատուկ չէ հանգստանալ ձեռք բերածով։ Նրանք իրենց հաշիվ են տալիս այն բանում, որ արտադրանքի մի շարք կարևոր տեսակների արտադրությունը դեռ հետ է մնում ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջներից, որ որոշ ճյուղեր ոչ-լրիվ են կատարել հնգամյակի առաջադրանքը։ Քաղաքի և գյուղի աշխատավորները լարում են իրենց ջանքերը այն բանի համար, որպեսզի վերացնեն առանձին տեղամասերի հետ մնալը, նրանց հասցնեն առաջավորների մակարդակին և ձեռք բերեն նոր, էլ ավելի խոշոր հաջողություններ կոմունիստական շինարարության գործում։

Հետպատերազմյան հնգամյակի հանրագումարների վերաբերյալ հաղորդագրությունն առաջ բերեց միլիոնավոր մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվության նոր վերելք։ Սովետական ժողո-

վուրդը խանդավառությամբ իրականացնում է վիթխարի հիդրոէլեկտրակայանների և ջրանցքների կառուցման ստալինյան պլանը՝ Վոլգայի, Դնեպրի, Ամու-Դարիայի և Դոնի վրա։ Շարունակ ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում սոցիալիստական մրցությունը 1951 թվականի արտադրական առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու, ամենահարուստ տեխնիկան լավագույն ձևով օգտագործելու համար, արդյունաբերության, տրանսպորտի և գյուղատնտեսության հետագա վերելքի համար։

Քննարկելով հետպատերազմյան հնգամյա պլանի կատարման արդյունքների վերաբերյալ պատմական Հաղորդագրությունը, մեր Հայրենիքի աշխատավորները իրենց ջերմ սիրո և երախտագիտության զգացմունքներն ուղղում են բոլշևիկների իմաստուն պարտիային, մեր բոլոր հաղթանակների ստեղծող մեծ Ստալինին։ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի հաջող կատարման լուրը մեծ բերկրանքով ընդունեցին բոլոր երկրների աշխատավորները։ Նրանք սովետական ժողովրդի՝ խաղաղության դրոշակակրի նոր հաղթանակը ողջու-



նում են, որպես մի մեծ ավանդ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի գործում։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի փառահեղ արդյունքները սովետական մարդկանց ոգեշնչում են նորանոր սխրագործությունների՝ խաղաղ ստեղծարար աշխատանքում, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։

Ս. ԲԱԼԲԵԿՈՎ



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՀԵՏ

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը իրավամբ կարելի է անվանել երիտասարդական կոլեկտիվ. նրա ճնշող մեծամասնությունը երիտասարդ բանվորներ և բանվորուհիներ են, որոնք իրենց աշխատանքային կյանքը սկսել են հենց այստեղ, որակավորվել և դարձել իրենց գործին տիրապետող լավագույն մասնագետներ։

Երիտասարդ բանվորներին, հատկապես գործարանում նոր աշխատանքի անցածներին օգնելու, նրանց մեջ աշխատանքային բարձր գիտակցություն և կարգապահություն դաստիարակելու գործում մեծ անելիքներ ունեն գործարանի ագիտատորները։

Բազմաթիվ օրինակներով կարելի է ցույց տալ, թե ինչպես ագիտատորները, որոնք մեծ մասամբ արտադրության առաջավորներ են, երկարատև փորձի տեր վարպետներ, ինժեներներ ու տեխնիկներ, իրենց լավ



աշխատանքով, երիտասարդ, նորեկ բանվորների նկատմամբ ունեցած հոգատարությամբ, ճշմարտացի խոսքով կարողանում են նրանց մեջ սեր դաստիարակել դեպի աշխատանքը, սովորեցնել ավելի լավ աշխատելու, բարձրացնելու իրենց որակը։

Այդպիսի լավագույն ագիտատորների թվին է պատկանում գեներատորների ցեխի ագիտատոր, ավագ վարպետ ընկ. Վարազդատ Մովսիսյանը։ Երիտասարդ բանվորների հետ նրա ունեցած զրույցներն անցնում են հետաքրքիր, նպատակասլաց կերպով։ Դա հետևանք է այն բանի, որ ագիտատորն այդ զրույցներին նախապատրաստվում է նախօրոք, յուրաքանչյուր զրույցի համար ընտրելով կոնկրետ, ունկնդիրներին հետաքրքրող առօրյա թեմա, հավաքելով մեծ թվով օրինակներ ու փաստեր, նախապատրաստում է անհրաժեշտ ցուցադրական նյութեր։

Բացի ընդհանուր զրույցներից, ագիտատոր Մովսիսյանը իր աշխատանքի ընթացքում լայնորեն կիրառում է անհատական մոտեցման մեթոդը, այսինքն՝ հետաքրքրվում է յուրաքանչյուր երիտասարդ բանվորի աշխատանքով, կենցաղով, զրուցում է նրա հետ, օգնում՝ երբ դրա կարիքը զգացվում է։

Երբ նորեկ երիտասարդ բանվորը աշխա-

տանքի է անցնում գեներատորների ցեխում, ապա նույն օրը ագիտատոր Մովսիսյանը ծանոթանում ու զրուցում է նրա հետ։ Նա հենց առաջին օրվանից նրանց ծանոթացնում է այն հզոր տեխնիկայի հետ, որն ունի իրենց ցեխը, միաժամանակ վստահություն ներշնչում, որ այդ ամենին կարող են տիրապետել և իրենք, նորեկները, եթե այդ ցանկանան ամբողջ սրտով և որ այդ բանում նրանց կօգնի ցեխի կոլեկտիվը։

Ահա մի օրինակ։ Գեներատորների ցեխում որպես աշակերտ աշխատանքի անցավ երիտասարդ բանվոր Հ. Թադևոսյանը։ Ագիտատոր Մովսիսյանը նրան ցույց տվեց իրենց պատրաստած գեներատորները և ասաց.

— Տեսնո՞ւմ ես այս մեքենաները, սրանցից ամեն մեկը կարող է լուսավորել մեկ գյուղ, աշխատեցնել կոլխոզի ջրաղացը, արհեստանոցները։ Եվ այդ մեքենան պատրաստել են ահա այս երիտասարդները, որոնք նույնպես մեզ մոտ եկան առանց որևէ մասնագիտություն ունենալու։ Դու էլ կարող ես նրանց նման մասնագետ լինել, եթե իսկապես ցանկություն ունես և եթե լավ աշ-



խատես։ Իսկ եթե ավելի աչքաբաց լինես, հետագայում կարող ես դառնալ վարպետ, էլ ավելի անվանի մարդ։ Այ, օրինակ, մեզ մոտ են աճել և անվանի մարդ դարձել Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ ընկեր Եկատերինա Բատոյան, լավագույն ստախանովականներ Խեվոյանը, Թեկուլյանը և շատ ուրիշներ։ Հենց ես ինքս, գործարան եկա որպես աշակերտ, իսկ այժմ ցեխի ավագ վարպետն եմ։ Ուրեմն ամեն ինչ կախված է քեզանից։

Բայց ագիտատոր Մովսիսյանը երիտասարդ բանվոր Թադևոսյանի հետ իր կատարելիք աշխատանքը այսքանով ավարտված չհամարեց։ Այնուհետև նա ուշադիր կերպով հետևեց երիտասարդ բանվորի աշխատանքին, օգնեց մասնագիտություն ձեռք բերելու։ Միաժամանակ, երբ ագիտատոր Մովսիսյանը նկատում էր, որ Թադևոսյանը սառն է վերաբերվում դեպի աշխատանքը, իրեն տրված հանձնարարությունները լավ չի կատարում, ապա հանդիմանում էր նրան, այդ մասին խոսում ցեխի աշխատողների հետ անցկացրած զրույցի ժամանակ։ Իսկ մեկ անգամ ագիտատորը նրան խիստ քննադատության ենթարկեց ցեխի բանվորական ժողովում։

Եվ ահա փորձառու վարպետի և լավագույն

ագիտատորի՝ դեպի երիտասարդ բանվորն ունեցած այս հոգատարությունը, և միևնույն ժամանակ պահանջկոտությունը, տվեցին իրենց փայլուն արդյունքները։ Հ. Թադևոսյանը դարձավ գործարանի լավագույն բանվորներից մեկը և այժմ իր պլանները կատարում է 200—230 տոկոսով։

Երիտասարդ բանվորներին ավելի լավ աշխատել սովորեցնելու համար ագիտատոր Մովսիսյանը լայնորեն օգտագործում է ինչպես իրենց ցեխի, այնպես և ամբողջ գործարանի առաջավոր բանվորների փորձը մասսայականացնելու մեթոդը։ Բազմաթիվ են այնպիսի դեպքերը, երբ նա իրենց ցեխի թերացող բանվորներին տարել է առաջավոր ստախանովականների դազգահների մոտ, ցույց տվել և բացատրել, թե ինչպես պետք է ավելի լավ աշխատել, այդպիսով հասնելով իր նպատակին։

Այսպես, երիտասարդ բանվոր Իգիթբաշյանը նույն աշխատանքն էր կատարում, ինչ որ ստախանովական Ե. Բատուևան, բայց նրանից երկու անգամ պակաս արտադրանք էր տալիս։ Ագիտատորը Իգիթբաշյանին տարավ Բատուևայի դազգահի մոտ և մանրամասն ցույց տվեց, թե ինչպես է աշխատում



անվանի ստախանովական բանվորուհին և հենց նույն տեղում էլ կատարել տվեց նրա աշխատանքային պրոցեսները։ Երկար ժամանակ չանցած, Իգիթբաշյանը, աշխատելով Բատուևայի օրինակով, սկսեց մեկ և կես անգամ ավելի արտադրանք տալ, քան առաջ։

Երիտասարդ բանվորների մեջ ագիտացիոն մասսայական աշխատանք տանելու գործում ագիտատոր Մովսիսյանին մեծ չափով օգնում է այն հանգամանքը, որ նա անմիջապես աշխատում է արտադրության մեջ և հանդիսանում է ցեխի վարպետը։ Բայց Մովսիսյանը լավ գիտի, որ արտադրության մեջ դեռ չկոփված երիտասարդ բանվորների վրա շատ ավելի մեծ ներգործություն է ունենում սեփական օրինակը, համոզեցուցիչ խոսքը, խրախուսանքը։ Դրա համար նա հետևում է, որ ցեխում մշտապես տիրի օրինակելի կարգ ու կանոն, որ յուրաքանչյուր բանվոր աշխատանքի առաջին րոպեից մինչև նրա ավարտը ապահովված լինի անհրաժեշտ գործիքներով ու նյութերով և կարիք չունենա ցեխում ման գալու։ Իսկ երբ նորեկ, երիտասարդ բանվորը գործարան գալու հենց առաջին օրվանից

ընկնում է այդպիսի կազմակերպված միջավայր, ուր որոշակի կերպով հայտնի է յուրաքանչյուրի անելիքը և ուր ամեն մեկը ձըգտում է հետ չմնալ ընկերոջից, ապա ինքն էլ դաստիարակվում է այդպիսի կարգապահությամբ աշխատել։

Էլեկտրամեքենաշինական գործարանի գեներատորների ցեխում տիրում է այդպիսի օրինակելի կարգ ու կանոն։ Ցեխն աշխատում է ռիթմիկ, ըստ գրաֆիկի և սիստեմատիկ կերպով գերակատարում է իր առաջադրանքները։ Եվ ցեխի այդ լավագույն աշխատանքում իր բաժինն ունի նաև ադիտատոր ընկ. Վ. Մովսիսյանը։

Ռ. ՊԵՏՐՈՍՅԱՆ





# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՄԵԾ ԿԱՌՈՒՑՈՒՄՆԵՐԻՆ

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի հաջող կատարմամբ մեր երկրում ստեղծվել են բոլոր պայմանները սովետական էկոնոմիկայի հետագա հզոր վերելքի և ժողովրդական տնտեսության ծաղկման համար։ Սովետական Միության աշխատավորները հսկայական խանդավառությամբ ու բերկրանքով ձեռնամուխ են եղել կոմունիզմի կառուցման ստալինյան պլանի կենսագործմանը։ Այդ մեծ պլանի մի մասն են կազմում Ստալինգրադյան, Կույբիշևյան, Կախովկայի հիդրոէլեկտրակայանները, Վոլգա—Դոն, Գլխավոր-Թուրքմենական, Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջըրանցքները, կոմունիզմի այդ հոյակապ կառույցումները, որոնց կառուցմանը մեծ Ստալինի գլխավորությամբ ձեռնամուխ է եղել ստեղծագործ սովետական ժողովուրդը։

Մեր բազմազգ պետության բոլոր ժողո-

վորդների հետ միասին, հայ ժողովուրդը մեծ խանդավառությամբ ու բերկրանքով դիմավորեց Սովետական կառավարության որոշումները՝ կոմունիզմի վիթխարի նորակառույցների շինարարության մասին։ Սովետական Հայաստանի աշխատավորները կառուցումների այդ հոյակապ պլանում տեսնում են ստալինյան հոգատարության մի նոր դրսևորումը՝ սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարելավման, Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկաների մեծ Միության բոլոր ռեսպուբլիկաների ծաղկման նկատմամբ։

Բոլոր եղբայրական ռեսպուբլիկաների աշխատավորների հետ միասին, հայ ժողովուրդը լի է սովետական պետության այդ խոշոր ձեռնարկման մեջ իր ավանդն ունենալու նվիրական ցանկությամբ։ Ռեսպուբլիկայի այն արդյունաբերական ձեռնարկություններում, որոնք կատարում են կոմունիզմի նորակառույցների պատվերները, արտադրական մեծ խանդավառություն է տիրում։ Այդ ձեռնարկությունների կոլեկտիվները, հայրենասիրական բուռն խանդավառությամբ լի, պայքարում են պատվավոր առաջադրանքները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու համար։



Երևանի Փոքր Հիդրոտուրբինների գործարանը այս տարվա առաջին կիսամյակում պետք է պատրաստեր և Ստալինգրադի ու Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանների և Վոլգա—Դոն ջրանցքի կառուցողներին ուղարկեր կենտրոնախույս պոմպեր։ Գործարանի բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները և ծառայողները, գործադրելով իրենց բոլոր ջանքերը, ստալինյան հոյակապ կառուցումների պատվերները կատարեցին բարձր որակով և ժամկետից երեք ու կես ամիս շուտ։

Վերջերս Գլխավոր-Թուրքմենական ջրանցքի կառուցողներից գործարանն ստացել է պոմպերի նոր պատվեր՝ ընթացիկ տարվա երրորդ եռամսյակում ջրանցքի շինարարությանը հանձնելու համար։ Գործարանի աշխատողները ցնծությամբ ընդունեցին և այդ պատվավոր պատվերը։

Կոմունիզմի մեծ կառուցումների պատվերներն է կատարում նաև Երևանի Կաբելի գործարանը։ Վերջերս գործարանը Վոլգա—Դոն ջրանցքի շինարարությանն ուղարկեց նրա պատվերի վերջին պարտիան՝ 29.000 մետր էլեկտրալար։

Դեռ մեկ ամիս առաջ, ժամկետից 75 օր շուտ, Երևանի էլեկտրամեքենաշինական

գործարանի աշխատողները կատարեցին Գլխավոր-Թուրքմենական ջրանցքի համար տրանսֆորմատորներ պատրաստելու պատվավոր պատվերը։ Ապրիլի 5-ին գործարանը նոր պատվեր ստացավ Կախովկայի հիդրոէլեկտրակայանի կառուցողներից, որով նրանք խնդրում են շինարարության համար պատրաստել 14 ուժային տրանսֆորմատորներ։ Գործարանի աշխատողները մեծ խանդավառությամբ ձեռնամուխ են եղել այդ տրանսֆորմատորների պատրաստմանը։ Մտնելով սոցիալիստական մրցության մեջ, այդ պատվավոր առաջադրանքների վրա աշխատող շատ բանվորներ իրենց պլանները կատարում են 150—200 տոկոսով։

Առաջին եռամսյակում մեծ կառուցումների նկատմամբ իր պարտավորությունները հաջող կատարեց նաև Երևանի «Ավտոդետալ» գործարանը։ Պլանային առաջադրանքներից դուրս գործարանը մեծ քանակությամբ ավտոմոբիլի մասեր ուղարկեց Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի շինարարությանը։

Հարավ-Ուկրաինական ջրանցքի շինարարությանը մեծ քանակությամբ էլեկտրաարմատուրա է ուղարկել Երևանի էլեկտրալուսավորության արմատուրայի գործարանի



կոլեկտիվը։ Գործարանը պատվեր էր ստացել նաև Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի կառուցողներից, որը նույնպես կատարվեց ժամկետից շուտ։

«Հայմարմար» կոմբինատի կոլեկտիվը նույնպես իր ավանդն է ներդնում կոմունիզմի մեծ կառուցումների շինարարության գործում, մարմար ուղարկելով Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի շինարարության համար։

Կոմունիզմի մեծ կառուցումներից ստացվող ամեն մի պատվեր սիրով է ընդունում ու կատարում Կիրովականի Մյասնիկյանի անվան գործարանի կոլեկտիվը։ Դեռ անցած ամսվա կեսերին գործարանը Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի շինարարությանն ուղարկեց մի քանի վագոն կարբիդ։ Ուղարկված արտադրանքի մեծ մասը թողարկվել է պլանից դուրս։

Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի պատվավոր պատվերը ժամկետից շուտ կատարելու համար սոցիալիստական լայն մրցություն են ծավալել նաև Արթիկ-Տուֆի բանվորները։ Նրանք պատվիրատուին պետք է ուղարկեն 20 հազար խորանարդ մետր քար։ Այդ առաջադրանքի կատարման համար բացվել է նոր քարհանք, որից ստացվող

ամբողջ քարը, որ աչքի է ընկնում իր բարձր որակով, ուղարկվում է հերոս քաղաք՝ Ստալինգրադ։

Կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու համար, ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները մտել են սոցիալիստական մրցության մեջ։

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը, սոցմրցման հրավիրելով Թբիլիսիի Դազգահաշինական և Բաքվի էլեկտրամեքենաշինական գործարանների կոլեկտիվներին, օր ավուր արտադրական նորանոր հաջողություններ է ձեռք բերում։

Նորակառույցների պատվերները կատարող ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկություններին մեծ օգնություն են ցույց տալիս մեր երկաթուղայինները և Երևանի Օդանավակայանի աշխատողները։ Օդանավակայանից բարձրացող ինքնաթիռները մեծ նորակառույցների համար տանում են մեր ֆաբրիկաների ու գործարանների պատրաստած բեռները։ Վերջերս օդաչուները մի քանի ժամում Խարկով հասցրին երկու տոննայից ավելի շլանգալար, որն անհրաժեշտ էր քայլող էքսկավատորներ պատրաստող գործարանին։



Օդաչուները ինքնաթիռներով Վոլգա—Դոն նավարկելի ջրանցքի կառուցողների համար փոխադրել են նաև խոշոր քանակությամբ հագուստեղեն, որը հատուկ պատվերով պատրաստվել է «Կենցաղ» արտելում։ Անցած ամսվա կեսերին նույն հասցեյով մեծ քանակությամբ էլեկտրական լուսամփոփներ ուղարկեց Տեղական արդյունաբերության մինիստրության Երևանի Քիմիական գործարանը։

Կոմունիզմի մեծ կառուցումների մասին Միութենական կառավարության պատմական որոշումները ստեղծագործության լայն ասպարեզ են բացել նաև ռեսպուբլիկայի գիտնականների, հետազոտողների համար։ Ոգեշնչված ստալինյան վիթխարի կառուցումների հոյակապ պլաններով՝ Սովետական Հայաստանի գիտնականները իրենց ակտիվ մասնակցությունն են հանդես բերում այդ փառապանծ գործում։ Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիային կից ստեղծվել և գործում է Կոմունիզմի մեծ կառուցումներին աջակցող կոմիտե։ Ակադեմիայի Երկրաբանական ինստիտուտի հողերի մեխանիկայի լաբորատորիան ավարտել է Կույբիշևի հիդրոհանգույցի համար ինժեներա-երկրաբանական չափումների մեթո-

դիկայի մշակման աշխատանքը և այն ուղարկել է պատվիրատուին։

Մեծ կառուցումների համար խոշոր աշխատանք է կատարում նաև Ջրաէներգետիկ ինստիտուտը։ Ինստիտուտը պատրաստվում է Կույբիշևյան հիդրոհանգույցի՝ իր կառուցած մոդելի վրա կատարվելիք առաջիկա հետազոտություններին։ Ավարտվելու վրա են նոր բացված լաբորատորիայի սարքավորման աշխատանքները։ Կույբիշևյան հիդրոհանգույցի մեծ մոդելի պատրաստման աշխատանքներն ավարտվելու ժամկետը սահմանված է հունիսի 1-ը, որից հետո ինստիտուտի գիտական աշխատողների կոլեկտիվը կսկսի շլյուզացման կապակցությամբ առաջացող ալիքների շարժման փորձնական հետազոտությունը։

Շինանյութերի և կառուցումների ինստիտուտի գիտական աշխատողները, իրենց հիմնական աշխատանքից բացի մշակում են հինգ թեմաներ՝ կապված շինարարական աշխատանքների մեքենայացման և բետոնի տեխնոլոգիայի հետ։ Այդ աշխատանքների մեջ հատուկ ուշադրության է արժանի հիդրո-տեխնիկական շինարարության համար առաջարկվող բազմաբաղադրիչ ցեմենտը։



Ակադեմիայի մաթեմատիկայի և մեխանիկայի սեկտորը կատարում է խոշոր բետոնային մասսիվներում ջերմային լարվածության հետազոտություններ, ինչպես նաև մշակում է զանազան ճարտարապետական խնդիրների հաշվարկման մեթոդիկան, որոնք գործնական խոշոր նշանակություն կունենան Կույբիշևի և Ստալինգրադի հիդրոհանգույցների շինարարության համար։

Ոգեշնչված բնության վերափոխման ստալինյան հոյակապ պլաններով, հայ ժողովուրդը, ինչպես և ՍՍՌՄ բոլոր եղբայրական ռեսպուբլիկաների ժողովուրդները, իր ավանդն է մուծում կոմունիզմի նյութական բազայի ստեղծման մեծ գործում, ակտիվորեն մասնակցելով նշված վիթխարի կառուցումների իրականացմանը։ Հայաստանի աշխատավորությունը մեծագույն խանդավառությամբ բաժնեգրվեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պետական նոր փոխառությանը և դրանով իսկ իր ավանդը մտցրեց կոմունիզմի մեծ կառուցումները հաջողությամբ ավարտելու գործում։

Ա. ՄԱՐՏԻՐՈՍՈՎ

—∞—

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ

### I

### ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԸ

*1. Հնգամյա պլանի հիմնական խնդիրները և նրանց կատարումը։*

*2 Հնգամյա պլանի հաջող կատարումը սովետական ժողովրդի մեծ հաղթանակն է, նոր հզոր ներդրում կոմունիզմի կառուցման գործում։*

*3. Հետպատերազմյան հնգամյակի հաջող կատարումը սովետական պետության հզորության, նրա խաղաղասիրական քաղաքականության վառ արտահայտությունն է։*

*4. Հնգամյա պլանի ժամկետից շուտ կատարումը հետևանք է սոցիալիստական մրցության լայն ծավալման, սովետական ամբողջ ժողովրդի անձնվեր, հերոսական աշխատանքի։*



*5. Հետպատերազմյան հնգամյակի հաջող կատարումով պայմաններ են ստեղծված սովետական էկոնոմիկայի հետագա հզոր վերելքի համար։*

### II

### ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

*1. Սոցիալիստական արդյունաբերության առաջատար դերը սովետական էկոնոմիկայի զարգացման, կոմունիստական շինարարության պլանների կենսագործման ասպարեզում։*

*2. Սոցիալիստական արդյունաբերությունը աշխարհում ամենաբարձր տեմպով զարգացող, նորագույն տեխնիկայի վրա հիմնված արդյունաբերություն է։*

*3. Ինչպե՞ս է կատարվել հնգամյա պլանը ըստ արդյունաբերության առանձին բնագավառների։*

*4. Սովետական ինդուստրիայի դերը մեր երկրի ժողովրդական տնտեսության տեխնիկական զինվածության հզորացման գործում։*

*5. Սովետական նոր, կատարելագործված տեխնիկան՝ որպես մտավոր և ֆիզիկական աշխատանքների միջև եղած տարբերության վերացման նախապայման։*

*6. Հետպատերազմյան առաջին հնգամյակի ընթացքում Հայկական ՍՍՌ արդյունաբերության ձեռք բերած նվաճումները։*

7. Ինչպե՞ս է կատարել մեր ձեռնարկությունը իր հնգամյա պլանը։

8. ՍՍՌՄ-ի արդյունաբերության ձեռք բերած նվաճումները հետևանք են մեր երկրի ժողովրդական տնտեսության ինդուստրացման ստալինյան հանճարեղ քաղաքականության։

9. Սոցիալիստական մրցության լայն ծավալումով բազմապատկենք արդյունաբերության բնագավառում մեր երկրի ձեռք բերծ նվաճումները։

## III

## ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

1. Սովետական Միության գյուղատնտեսությունը ամենաառաջավոր, տեխնիկապես ամենից զինված ու մեքենայացված տնտեսությունն է աշխարհում։

2. Հնգամյակի ընթացքում սոցիալիստական գյուղատնտեսության ձեռք բերած նվաճումները ըստ գյուղատնտեսական առանձին կուլտուրաների։

3. Հնգամյա պլանի կենսագործումը գյուղատնտեսության տեխնիկական զինվածության բնագավառում։

4. Հնգամյա պլանի կենսագործումը հանրային անասնաբուծության զարգացման բնագավառում։

5. Բնության վերափոխման ստալինյան պլանի կեն-



սագործումը գյուղատնտեսության նոր, հզոր վերելքի անհրաժեշտ նախապայմանն է։

6. Հետպատերազմյան առաջին հնգամյակի ընթացքում Հայկական ՍՍՌ-ի գյուղատնտեսության ձեռք բերած նվաճումները։

7. Ի՞նչ աճ ունեցավ մեր կոլխոզը հնգամյակի ընթացքում։

8. Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացումը, հանրային անասնապահության գլխաքանակի արագ աճը և նրա մթերատվության բարձրացումը հանդիսանում են գյուղատնտեսության հետագա զարգացման գլխավոր խնդիրները։

9. Սոցիալիստական գյուղատնտեսության աչքի ընկնող հաջողությունները հետևանք են կոլխոզների, սովխոզների և մեքենա-տրակտորային կայանների զարգացման, գյուղատնտեսության մեքենայացման համար բոլշևիկյան պարտիայի և սովետական կառավարության կողմից տարվող հսկայական աշխատանքի։

## IV

## ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ԱԶԳԱՅԻՆ ԵԿԱՄՏԻ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. Մեր երկրում արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման բարձր տեմպերը ապահովում են ազգային եկամտի անընդհատ աճը։

2. Սովետական Միության մեջ ազգային եկամտի աճը ժողովրդական մասսաների նյութական բարեկեցության բարձրացման վառ ապացույցն է։

3. Ինչպե՞ս է Սովետական Միության մեջ հնգամյակի ընթացքում աճել ազգային եկամուտը։

4. Ազգային եկամտի բաշխումը ՍՍՌՄ-ում և կապիտալիստական երկրներում։

5. Աշխատավորների շահերի համար ազգային եկամտի բաշխումը մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի հետևանք է։

## V

## ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ԺՈՂՈՎՐԴԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՈՒ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. Հնգամյա պլանի հաջող կատարումով է՛լ ավելի բարելավվեց մեր երկրի բնակչության նյութական ու կուլտուրական բարեկեցության մակարդակը։

2. Հնգամյակի ընթացքում ինչպես են աճել աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման համար պետության կողմից կատարվող ծախսերը։

3. Հնգամյակի ընթացքում մասսայական դպրոցների, տեխնիկումների, բարձրագույն ուսումնական հաստատությունների ցանցի է՛լ ավելի ընդարձակումը՝ սովետական ժողովրդի կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման փայլուն ապացույցն է։



4. Հնգամյակի ընթացքում լայն սպառման ապրանքների մանրածախ գների սիստեմատիկ իջեցումը մեր պարտիայի և կառավարության կողմից ժողովրդի նկատմամբ ցուցաբերվող հոգատարության վառ ապացույցն է։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թ. փետրվարի 9-ին։

Ընկ. Գր. Հարությունյանի հաշվետու զեկուցումը Հայաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարում ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին։ «Ագիտատորի բլոկնոտ», 1951 թ. № 6։

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Սովետական Հայաստանի աշխատավորները հաջողությամբ կատարեցին հետպատերազմյան հնգամյակը։ «Ս. Հ.», 1951 թ. փետրվարի 8, 2-րդ էջ։

Մեր ագիտատորների ազնիվ պարտքը։ «Պրավդա»-ի 1951 թ. մայիսի 10-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի մայիսի 11-ի համարում։



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել*

Ա. Գ. ՄԱՍՆՎԻՉ.— Արեգակի և աստղերի էներգիայի աղբյուրը: 112 էջ, գինը 1 ռ. 90 կոպ.:

Գ. Խ. ԱՂԱՋԱՆՅԱՆ.— Հացահատիկային կուլտուրաների մոլախոտերը և պայքարը նրանց դեմ: 38 էջ, գինը 55 կոպ.:

Լ. ԽԵՅՖԵՑ.— Պայքար գյուղատնտեսական տրավմատիզմի դեմ: 29 էջ, գինը 35 կոպ.:

Ն. Ա. ՄԱԼԱԹՅԱՆ.— Կերի հանքային նյութերը և նրանց նշանակությունը գյուղատնտեսական կենդանիների համար: 41 էջ, գինը 75 կ.:

Մ. Գ. ԲԱԳՐԱՏՅԱՆ.— Ծաղկաբուծության ձեռնարկ: 60 էջ, գինը 1 ռ. 10 կ.:

Վ. ՋՈՀՐԱԲՅԱՆ.— Ոչխարների և այծերի կոնտագիոզ ագալակտիան (վարակիչ կաթնազրկում) և պայքարը նրա դեմ: 32 էջ, գինը 50 կոպ.:

*Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հրատարակությամբ լույս են տեսել.*

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ.— Լենինյան «Իսկրան»: 59 էջ, գինը 1 ռ.:

Հ. ՂԱՆԱԼԱՆՅԱՆ.— Ավետիք Իսահակյան: 38 էջ, գինը 1 ռ.:

Վ. Մ. ՋԱՔԱՐՅԱՆ.— Պտղատու ծառերի ձևավորումը: 25 էջ, գինը 75 կ.:



Կ. Ն. ՊԱՖՑԵՆԳՈԼՑ.— Մեր մոլորակի պատմությունը: 75 էջ, գինը 2 ռ.:

Հ. ՄԿՐՏՉՅԱՆ.— Ծառեր և թփեր դաշտապաշտպան անտառաշերտերի համար: 100 էջ, գինը 2 ռ. 75 կ.:

Վ. ՔՅՈՒՐՔՉՅԱՆ.— Պանրի մակարդի պատրաստումն ու օգտագործումը: 16 էջ, գինը 30 կ.:

—O—

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

